Նկ. Ն. ՔՈԹԱՆՋՅԱՆԻ

# ԱՄՌԱՆ ԿԱՆՉԸ

ԳՐ. ՋԱՆԻԿՅԱՆ

Պտղավորվել է ամառը կրկին
Սարում ու ձորում, անտառում, այգում,
Կանչում է ծանոթ ձայնով ամենքին,
Լսի՛ր այդ զվարթ ձայնը նաև դու։

Վե՛ր կաց և գնա, ուր կանչում է քեզ,
Սուզվիր դու նրա կանաչ ծովի մեջ.
Ճախրիր ու երգիր թռչունների պես,
Եվ թող քո երգը կարկաչի անվերջ։
Ինչքան դու զգաս թովչանքը ամռան,
Ու կոփվես նրա բորբ արևի տակ,
Այնքան խստաշունչ մրրիկը ձմռան
Քեզ մեղմ կթվա, հաճելի ու տաք։
Հողմերին հանձնիր քո կուրծքը ջահել,
Թեկուզ և լինի որոտ ու կայծակ,
Թող ներքև մնան ամպեր ու ժայռեր,
Դու վեր բարձրացիր քաջ ու համարձակ։
Պտղավորվել է ամառը կրկին
Սարում ու ձորում, անտառում, այգում,
Ծածկի՛ր դու հիմա էջերը գրքի
Եվ գնա ճախրի՛ր բնության գրկում։



№ 7 1958 թ.

ՀՈՒԼԻՍ



ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 30-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԱՏԱՆԻ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ






# ԼՐՏԵՍԸ

ԱՐՏ. ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ

Նկ. Գր. Խանջյանի

Արևի քառակուսի մի շող պատուհանից ընկավ ներս, կանգնեց ու դողդողաց դիմացի պատին։

«Պատկեր է,— մտածեց Երկար Մակարը,— բայց ինչո՞ւ է կանչում այսքան վաղ»։

Շողը կանգնեց, դողաց, հետո հանկարծ կլոր մի շրջան գծեց ու սկսեց պտտվել համառ, հրամայական։

«Օհո՜, շտապ գործ կա, որ այսպես խառնվել է»— ընկերոջ անդրադարձնող հայելու նոր ազդանշանը հասկանալով, ավելացրեց Մակարը ու տեսնելով, որ շողը սկսեց հարցական գրել՝ արագորեն հագավ շորերը և դուրս եկավ։

Նա կտրեց, անցավ փողոցը, մտավ դիմացի տան շքամուտքը ու բարձրացավ վեր, հետո հրշեջի սանդուղքով մագլցելով մոտեցավ դեպի ձեղնահարկը տանող դռանը և, այն է, ուզում էր մտնել ներս, երբ դուռը հանկարծ փակվեց ուղիղ իր քթի՜ն և այնքան ուժեղ, որ քիչ մնաց գլխիվայր ցած գլորվեր ու չափեր շենքի բարձրությունը։

— Բաց արա դուռը, Խոստի՛կ,— խնդրեց Մակարը։

— Նշանաբա՛նը,— հնչեց Խոստիկի խրոխտ, սառը ձայնը։

— «Նիզակ»— ասաց Մակարը։

Դռան ետևում. ոչ մի ձայն։

— «Նիզակ» — տխուր կրկնեց Մակարը ու ավելացրեց,— Խոստիկ ջան, դուռը բաց, մարդ դուրս կգա, կտեսնի։

— Նշանաբա՛նը,— առարկություն չվերցնող ձայնով պնդեց Խոստիկը։

— Ասում եմ «նիզակ» էլի։

— Դա չէ, փոխվել է։

— Ե՞րբ է փոխվել։

— Առավոտյան, 7.00 ժամին։

— Ո՞վ է փոխել։

— Ես։

— Է, լավ, դու փոխել ես, ե՞ս որտեղից իմանամ։

— Իմ գործը չէ։

— Ախր մտածիր, Խոստիկ ջան,— աղաչեց Մակարը,— վիզը ձգելով ու խեղճ-խեղճ ժպտալով, մոռանալով, որ Խոստիկը իր ժպիտը չի տեսնում,— ախր մտածիր, Խոստիկ ջան, ես հո Արքիմեդը չեմ։

Արքիմեդի անունը տալը փրկեց Մակարին, բանը այն է, որ Խոստիկը շատ էր հարգում ու մի քիչ էլ վախենում էր Արքիմեդից, որովհետև նրա օրեն-



քը մինչև վերջ չկարողացավ սովորել։ Այդ էր պատճառը, որ դուռը բացեց ու ներս թողեց ընկերոջը։ Մակարը սպասում էր հարվածի, բայց չստացավ և ուզում էր այդ կապակցությամբ մի քանի խոսք ասել, բայց Խոստիկը քաշեց նրա թևից.

— Սո՛ւս, այստեղ պատերն էլ ականջ ունեն։

Հետո Խոստիկը Մակարին տարավ դեպի դիտակետը, որ մի ջարդված լուսամուտ էր, ու մատը մեկնելով դեպի իրենց դիմացի շենքը, շշուկով ասաց.

— Նայիր 2-րդին։

— Ինչը՞, ինչի՞ն,—զարմացավ Մակարը։

— Երկրորդ լուսամուտին։

— Դե մարդավարի խոսիր, էլի,— քրթմնջաց Մակարը, ապա գրպանից հանեց հեռադիտակը, որը միշտ մոտն էր պահում, և որի մի անցքում խոշորացույց չկար, և դրեց աչքին։ Շենքը մի կողմով մոտեցավ։

Երկրորդ պատուհանում էլեկտրական լապտերը դեռ չէին մարել, և երևում էր, որ մի մարդ ինչ-որ անորոշ շարժումներ էր անում։ Երկար Մակարը աչքից հեռացրեց դիտակը, ու արդեն սովորական աչքով պարզ տեսավ, որ մարդը հայելու մոտ մորուքի նման ինչ-որ բան էր կպցնում կզակին։

— Պա՛հ,—զարմացավ Մակարը։

— Բա՜,—հաղթական երկարացրեց Խոստիկը,— հասկանո՞ւմ ես, թե ով է, ո՞չ, չես էլ պատկերացնո՞ւմ, ախ դու դմբո՛, լրտե՛ս է, լրտես,—ավելացրեց նա շշուկով։

— Ես դրան ճանաչում եմ,— վախվխելով, որ իրեն կարող են մեղադրել լրտեսի հետ ծանոթ լինելու համար, ասաց Մակարը,— Նոր է եկել մեր շենքը։ Ես դարբասի մոտ կանգնած էի, որ եկավ։ Կանգնեց, մի մատով կանչեց ու հարցրեց. «Սիրունիկս, այստե՞ղ ես ապրում»։ «Այո» —ասացի ես։ Իսկ նա, թե՝ «Չգիտե՞ս, վարձու սենյակ չկա՞»։ «Ինչպես չէ,—ասացի,—քեռի Հակոբը սենյակը վարձով է տալիս»։ «Իսկ ինչպիսի՞ մարդ է,—հարցրեց,— խելո՞ք է, այսինքն՝ չի՞ խմում, կռիվ չի՞ անում»։

— Այդպես, այդպես, շատ հետաքրքիր է,—ընդմիջեց Պստիկ Խոստիկը, որ գրպանից մի տետր հանելով, վրան ինչ-որ բան գրեց,—հետո՞...

Մակարը երկուտակվեց ու Խոստիկի ձեռքի տետրի վրա կարդաց՝ «Հանգիստ տեղ է որոնել, շատ կասկածելի է»։

— Ծը՛,—լեզուն ծլթացրեց Խոստիկը,—դժվար է, տեսնես՝ եթե Թոմ Սոյերը իմ տեղը լիներ, ի՞նչ կաներ։

— Դե Թոմ Սոյերի ժամանակ ի՞նչ էր, է,—ավելացրեց Երկար Մակարը,— ոչ տրամվայ կար, ոչ ավտո. եղած-չեղածը մի քանդված մատուռ էր։ Իսկ հիմա, այս մեծ քաղաքում արի ու լրտես բռնի։

— Տես, տես, տես...

Ընկերները նորից նայեցին պատուհանին։ Մարդը հիմա էլ շեկ մազեր էր դնում գլխին ու հետո էլ ինչ-որ մեկի վրա մատ էր թափ տալիս։ Հետո նա պոկեց մորուքն ու մազերը, դրեց մի ճամպրուկի մեջ ու դուրս գնաց։

— Հետևե՛նք,—առաջարկեց Մակարը։

— Ո՛չ,— առարկեց Խոստիկը,— ցերեկով չի կարելի, կկասկածի ու կփախչի։ Չէ, միամիտ չլինես, կհետևենք երեկոյան...

* * *

Ամբողջ օրը նրանք ման էին գալիս միասին, ճակատները կնճռոտած՝ մի շատ կարևոր գաղտնիք ունեցող մարդու պես։ Երկար Մակարի լեզուն, ինչպես ասում են, քոր էր գալիս։ Պստիկ Խոստիկի ահը չլիներ, նա լրտեսի մասին արդեն հայտնած կլիներ իր բոլոր ծանոթներին և անծանոթների կեսին։ Բայց Պստիկ Խոստիկը նրանից մի քայլ անգամ չէր հեռանում։ Ասենք, նույնը կլիներ նաև Պստիկ Խոստիկի հետ, եթե Երկար Մակարը նրա հետ չլիներ։ Այդ էր պատճառը, որ ընկերներն այդ օրը բոլորովին չէին կռվում միմյանց հետ, քայլելու ժամանակ ոտք չէին դնում իրար առաջ և փոխադարձաբար սիրալիր էին։ Բանն այնտեղ հասավ, որ Մակարը Խոստիկին նվիրեց իր միականի հեռադիտակը և փոխարենը նվեր ստացավ նրա ջարդված մատիտասրիչը։

— Մեզ կնկարեն պատի թերթում ու կգրեն՝ «Ահա թե ինչպիսին պետք է լինեն պիոներները» կամ՝ «Լրտեսի սանձահարողները»—ասում էր Խոստիկը։

— Իսկ պատկերացնո՞ւմ ես,— խոկուն ընդհատում էր Մակարը,— մեր դասարանի տղաներն ու աղջիկները նախանձից կպայթեն...

— Բոլորը մեզ կշնորհավորեն։ Դասատուները դաս չեն հարցնի...

Երեկոյան նրանք սրտի թփթփոցով մոտեցան կասկածելի մարդու բնակարանին։ Կանգնեցին դռան ետևում ու ականջ դրեցին։ Սկզբում ոչ մի ձայն չէր լսվում։ Հետո հանկարծ ինչ-որ մեկը ուժեղ քրքջաց. «Հա՜, հա՜, հա՜»։ Մակարի ու Խոս-

տիկի մազերը բիզ-բիզ կանգնեցին։ «Հա՜, հա՜, հա՜»— նորից ծիծաղեց մեկը, բայց այս անգամ բարակ, ջղային ձայնով։

— Փախչենք, խելագար է,— կմկմաց Մակարը, չկարողանալով տեղից շարժվել։ Երկար ոտքերը չէին ենթարկվում, կարծես իրենը չէին։

Մարդը շարունակում էր ծիծաղել, հետո հանկարծ լռեց ու բացականչեց.

«Ա՜, պարոն սպա, հարգանքներս...»։ «Լռի՛ր, հիմար, ես քեզ համար այստեղ պարոն չեմ, այլ ընկեր»—բարկացած պատասխանեց մի ուրիշ ձայն։ «Բայց այստեղ ոչ ոք չկա»։ «Միևնույն է»։

— Լը... լը...սո՞ւմ ես,— կակազեց Խոստիկը,— ներ...սում մեկն էլ կա։ Ե... երևի գաղտնի դռնով է մտել։

— Մը... մտել է,— չիմանալով ինչ անել, կրկնեց Մակարը։

Իսկ ներսում զրույցը շարունակվում էր։ «Հասկանո՞ւմ ես,— ասում էր բարակ ձայնը,— ես, սիրելիս, այստեղ հատուկ նպատակով եմ եկել, հատուկ»։

— Հա... հատուկ,— ակամա կրկնեցին Մակարն ու Խոստիկը։

Ներսում լռություն տիրեց։ Հետո ինչ-որ բան թխթխկաց արագ-արագ, իրար ետևից։ Նորից լռություն տիրեց։ «Վա՜գր, վա՜գր,— հանկարծ կանչեց ջղային ձայնը,— դու ինձ լսո՞ւմ ես, վա՜գր։ Հաղորդում է Ա—4-ը, հաղորդում է՝ Ա—4-ը։ Ընդունիր»։

— Տես է, ապարատ էլ ունի,— վշտացած մրմնջաց Խոստիկը,— թշնամուն նյութեր է հաղորդում։

«Վագր, վագր,— շարունակում էր ջղային, ճչացող ձայնը,— տասներկու ատրճան, զեն, սառը, վեց, լսո՞ւմ ես... կրկնի՛ր»։

— Արի, մի ուշացրու,— աղաչեց Մակարը,— գնա, միլիցիոներ կանչի, վայթե վատ բան դուրս գա։

Խոստիկը ծոծրակը քորեց։

— Ախր, որ դուռը ծեծեն, դրանք գաղտնի ճանապարհով կփախչեն, է՛,— ասաց նա,— նախ և առաջ պետք է այդ անիծյալ ճանապարհն իմանանք։

Հաղորդումը դադարեց։ Ինչ-որ բան չխկաց ներսում, ճռռաց։ Մեկը թեթև քայլերով մոտեցավ միջանցքի դռանը։

Մակարն ու Խոստիկը կայծակի արագությամբ ետ փախան ու իրար դիպչելով աստիճաններից իջան ցած։ Վերևում ոտնաձայներ լսվեցին։ Քիչ հետո երևաց լրտեսը։ Նա հագին ուներ ամառային մոխրագույն վերարկու և լայնեզր գլխարկ, որը ծածկում էր աչքերը։ Ձեռքին փոքրիկ ճամպրուկ կար։

-- Բա որ ասում էի գաղտնի ճանապարհ կա՛,— շշնջաց Խոստիկը,— էն մեկը չկա, էն մեկը փախավ...

-- Սո՜ւսս...

Լրտեսը նկատեց տղաներին, կասկածամտորեն նայեց, ապա հանեց գլխարկը ու կեղծ ժպտաց.

— Հարգանքներս, պատանի բարեկամներ, բարև, Մակար, ինչպե՞ս ես։ Չե՞ք գալիս զբոսնելու։

Մազ էր մնացել, որ Մակարն ասեր՝ «Գնա, լրտես, քեզ էլ ճանաչեցինք» — բայց ժամանակին լեզուն կծեց և այնքան ուժեղ, որ աչքերն արցունքոտվեցին։

— Շնորհակալություն,— կմկմաց նա վիրավոր լեզվով, և չիմանալով ինչ անել, ավելացրեց,— սաստիկ զբաղված ենք։

— Այդ դեպքում գուցե ես ձեզ շոկոլա՞դ հյուրասիրեմ,— այս խոսքերի հետ լրտեսը ձեռքը դեպի գրպանը տարավ, հանեց երկու կոնֆետ ու մեկնեց տղաներին,— վերցրեք, վերցրեք, մի ամաչեք։





Ընկերներն անվճռական իրար նայեցին։ Խոստիկը դեմքը ծամռելով Մակարին հասկացրեց, որ եթե չվերցնեն, լրտեսը կարող է կասկածել և գործը կձախողվի։

Երբ լրտեսը հեռացավ, Մակարն արագ-արագ բացեց փաթեթը և ուզում էր շոկոլադը արդեն բացած բերանը տանել, երբ Խոստիկը հարվածեց նրա ձեռքին։ Կոնֆետն ընկավ ցած։

— Գժվե՞լ ես, ինչ է,— գոչեց Խոստիկը,— չատեղ են ասել՝ «Բոյը երկար, խելքը կարճ», լրտեսի տված կոնֆե՞տն ես ուտում, իսկ եթե նա թունավորված լինի։



Մակարի դեմքը պատի գույն ստացավ։ Նա ուզեց ինչ-որ բան ասել, բայց լեզուն չպտտվեց։ Եվ հենց այդ վայրկյանին հարևանի շունը պոչը թափահարելով մոտեցավ, տեսավ ընկած կոնֆետն ու այն բերանն առավ։

— Քո՛խ է, Բողար, գցի՛ր, քո՛խ է,— հուսահատ մղկտաց Խոստիկը ու վազեց դեպի շունը։

Բայց հիմար Բողարը բերանի թունավորված կոնֆետը գցելու փոխարեն, թռավ դեպի Խոստիկը ու նրա ձեռքի կոնֆետը խլելով, հենց այնպես, թղթով փաթաթված կուլ տվեց։

— Փախի՛ր,— գոռաց Խոստիկը,— փախի՛ր, Մակար, հիմա կպատռի ու կկծի։

Ընկերները գլուխները կորցրած փախան ու այնպիսի արագությամբ, որ եթե մրցումներ լինեին, առաջին և երկրորդ տեղերը իրենցն էր։ Եվ հանկարծ, հենց իրենց դիմաց տեսան լրտեսին, որ լայնեզր գլխարկով աչքերը ծածկած՝ քայլում էր։ Մակարն ու Խոստիկը կանգ առան հևասպառ, ետ նայեցին։ Շունը չէր երևում։

— Ի՞նչ անենք,— կծած լեզվով հասկացրեց Մակարը։

— Վերջ։ Հետևենք, տեսնենք, ուր է գնում։ Եթե մի տուն մտավ, կամ մի այլ տեղ, իսկույն զանգահարենք միլիցիա։

Գնացին։ Լրտեսը քայլում էր հանգիստ ու զգույշ, ցույց էր տալիս, թե զբոսնում է, բայց աչքի տակով դիտում էր շուրջը։ Հետո հանդիպեց մեկին, կանգ առավ։ Սկսեցին խոսել։ Մակարը պարզ լսեց, որ լրտեսը իր խոսակցին ասաց. «Այո, իհարկե, հենց այս երեկո»։

— Լսեցի՞ր,— շշնջաց Մակարը։

— Լսեցի,— շշնջաց Խոստիկը։

Ու նրանք ավելի վճռականությամբ հետապնդեցին։

Լրտեսը արագացրեց քայլերը. նայեց խաչմերուկի ժամացույցին ու ավելի արագացրեց։ Տղաները հազիվ էին հասնում նրա ետևից։ Համարյա վազում էին։ Քրտինքի կաթիլները առատորեն թափվում էին նրանց մազերի արանքից, բայց նրանք ոչինչ չէին զգում։ Ահա լրտեսը մոտեցավ թատրոնի մեծ շենքին, որի առջև շատ մարդիկ կային հավաքված։

— Երևի տեսել է, որ հետևում ենք, ուզում է խառնվել ժողովրդին, որ հետքը կորցնի,— ներհուն բացատրեց Խոստիկը։

Նրանք նկատեցին, թե ինչպես լրտեսը մարդկանց բազմությունը ճեղքելով մոտեցավ դռանը, թեքվելով ինչ-որ բան ասաց տոմսակներն ստուգողին ու ներս մտավ։

Խոստիկը ձեռքը խփեց ճակատին։

— Ա՜խ, անիծյալ, ոնց էլ գիտեի, որ փող չունենք, է,— բացականչեց նա հուսահատ։

— Ոչ, հենց այդտեղ էլ սխալվել է, ունենք,— ասաց Երկար Մակարը, ձեռքը գրպանը տարավ, դուրս բերեց մի մրոտ գուլպա, հանեց որսորդական հրացան գնելու նպատակով այնտեղ կուտակած 11 ռուբլի 27 կոպեկը ու մեկնեց Խոստիկին,— վերցրո՛ւ։

Խոստիկի սիրտը շարժվեց։ Որպես շնորհակալության նշան, նա ամուր սեղմեց Մակարի ձեռքը, գնաց հինգ ռուբլիանոց երկու տոմս վերցրեց, վազելով մոտեցավ Մակարին ու «մոռանալով» մանրը վերադարձնել, ասաց.

— Գնանք։

Ընկերները մոտեցան տոմսերն ստուգողին, ուզեցին ներս մտնել, բայց ստուգողը ուշադիր նայեց Մակարի երկար հասակին, հետո Խոստիկի պստիկ հասակին ու վճռականությամբ ասաց, որ 16 տարեկանից ցածր երեխաներին մուտքը երեկոյան ներկայացումներին արգելվում է։

Խոստիկը բողոքեց.

— Մորաքույր,—ասաց նա,— մենք շա՜տ, շա՜տ կարևոր, այսպես ասած, պետական...

— Լրտես... — ավելացրեց Մակարը, ու նրանք շփոթված մորաքրոջ առջևով ներս ընկան դահլիճ։

Եվ հանկարծ... մարեցին դահլիճի լույսերը։ Ա՜յ քեզ բա՜ն, դե արի ու այս մթանը լրտես բռնի։

— Դու կանգնիր դռան մոտ, որ հանկարծ չփախչի,—կարգադրեց Խոստիկը,—իսկ ես թաքուն դահլիճից կնայեմ։

Նվագախումբը սկսեց նվագել։ Բեմի լույսերը վառվեցին հազար գույներով։ Դահլիճը փոքր ինչ լուսավորվեց։ Խոստիկը մի անկյունից, Մակարը դռան մոտից աչքներն ուղղեցին դեպի դահլիճ ու սկսեցին շարք-շարք ստուգել աթոռները։ Նրանք նույնիսկ չնկատեցին, թե ինչպես բացվեց վարագույրը։

Եվ հանկարծ...

— Հա՜, հա՜, հա՜,—լսվեց ծանոթ, սարսուռ ազդող բրբիջը։

Խոստիկն ու Մակարը ցնցված դեպի բեմը դարձան ևվ ի՞նչ տեսնեն... իրենց հարևանը, այո՛, այո՛, այն լրտեսը, չեկ մորուքով ու չեկ մազերով, կանգնել է բեմի մեջտեղում, բրբջում է ու թավ ձայնով ասում.

— «...Պարոն սպա, հարգանքնե՛րս...»

# Ի՞ՆՉ ԴԱՌՆԱԼ

Հ. ՇԻՐԱԶ

Ի՞նչ դառնալ կյանքում. արհեստի՞ գնալ,
Օրմնադի՞ր լինել, դերձա՞կ, թե՞ դարբին.
Թե՞ իմաստության գահը բարձրանալ,
Որ միշտ վարդ բացվի քո կյանքի ճամփին։

Ինչ էլ որ դառնաս, լավ է այս կյանքում,
Մեկ նո՝ որմնադիր, թե ակադեմիկ,
Միայն թե հաղթես սուրբ աշխատանքում,
Որ միշտ ճակատդ համբուրեն մարդիկ։

Իմ սքանչելի, իմ լավ պատանի,
Իմացիր, լավ է, ինչ էլ որ դառնաս,
Միայն թե երկրին լինես պիտանի,
Որ հայրենիքիդ դու պարտք չմնաս։






# ԽԱՐՈՒՅԿԻ ՇՈՒՐՋԸ

Մութը իջավ լեռներից, սահեց ծառերի սաղարթներով ու միանգամից մտավ ճամբար: Վրանները թաղվեցին իրիկնային խավարի մեջ: Ճամբարի կենտրոնում վառվեց հերթական խարույկը, որի բոցեղեն լեզուները գնալով ավելի ու ավելի էին ձգվում վեր և թռչող կայծերի հետ ձուլվում թանձր խավարին:

Մինչև ուշ գիշեր բոցկլտում էր խարույկը, մինչև ուշ գիշեր պիոներները լսում էին իրենց ավագ ջոկատավարին...

### ԿՈՄԵՐԻՏՄԻՈՒԹՅԱՆ ԾՆՈՒՆԴԸ

Քառասուն տարի առաջ էր: Տարբեր կողմերից մեր երկիրն էին ներխուժել կապիտալիստական տասնչորս երկրների բանակները: Նրանք ուզում էին տապալել նորաստեղծ սովետական իշխանությունը և մեր հայրենիքը դարձնել իրենց գաղութը: Ամենուրեք արյունալի ոճրագործություններ էին կատարում նրանք. հրդեհում էին գյուղերը, անմեղ մարդկանց այրում էին կրակի վրա, կենդանիկենդանի թաղում սպանվածների հետ: Այդ ժամանակ էր, որ անգլիացիները գնդակահարեցին Բաքվի 26 կոմիսարների՝ Ստեփան Շահումյանին, Ալյոշա Ջափարիձեին, Մեշադի Ազիզբեկովին, Իվան Ֆիոլետովին և մյուսներին:

Մեր թշնամիներին օգնում էին սպիտակգվարդիական գեներալները, նախկին գործարանատերերն ու կալվածատերերը:

Ռազմաճակատների հրե օղակը բոլոր կողմերից սեղմում էր մեր հայրենիքը: Թշնամիներին հաջողվեց զավթել Ուկրաինան, Բելոռուսիան, Կովկասը, Միջին Ասիան, Ուրալը, Սիբիրը, Հեռավոր Արևելքը: Նրանք կանգնել էին Պետրոգրադի պատերի մոտ և սպառնում էին Մոսկվային:

Վլադիմիր Իլյիչ Լենինը պայքարի կոչեց մեր ժողովրդին: Առաջինը ոտքի ելան կոմունիստները: Նրանց օրինակով երիտասարդները կամավորական ջոկատներ էին կազմում և մեկնում ռազմաճակատ: Զինկոմիսարիատներ էին ներկայանում նաև անչափահասները, որոնք պահանջում էին իրենց էլ ուղարկել առաջավոր դիրքերը:

Քաղաքացիական պատերազմի այդ ահեղ օրերին, 1918 թվականի հոկտեմբերի 29-ին Մոսկվայում բացվեց Բանվորական և գյուղացիական երիտասարդական միությունների համառուսաստանյան առաջին համագումարը: Այդ ժամանակ մեր երկրի գրեթե բոլոր անկյուններում գործում էին երիտասարդական միություններ, որոնցից շատերը ծնունդ էին առել Հոկտեմբերյան ռևոլյուցիայի օրերին: Եվ ահա այդ համագումարը միավորեց բոլոր երիտասարդական կազմակերպությունները և հիմք դրեց կոմերիտմիությանը:

### ԵՐԳԸ ԳՐՈՀԻ Է ՏԱՆՈՒՄ

Խիզախ կոմերիտական էր Ալեքսեյ Սաֆոնովը: Գանգրահեր, ծիծղուն աչքերով այդ ուրախ պատանին ամբողջ գումարտակի սիրելին էր: Մի անգամ գումարտակին հրաման տրվեց թշնամուն դուրս վռնդել իր գրաված դիրքերից: Մեր զինվորները մի քանի անգամ գրոհի նետվեցին, բայց թշնամու գնդացրային ուժեղ կրակը թույլ չէր տալիս առաջ գնալու. Նրանք նորից պառկում էին գետնին: Լռության պահին մարտի դաշտում հանկարծ հնչեց մի երգ: Կոմերիտականները ճանաչե-

Հայաստանում առաջին կոմերիտական կազմակերպությունը հիմնադրվել է 1919 թվականի ապրիլին Երևանում և կրել է «Սպարտակ» անունը: Նրա հիմնադրման գործում կոմունիստների ղեկավարությամբ ամենա-



ՂՈՒԿԱՍ ՂՈՒԿԱՍՅԱՆ

ցին Ալեքսեյի ձայնը։ Նրանք ամբողջ հասակով ոտքի ելան և ձայնակցելով մարտական երգին, սրընթաց գրոհեցին թշնամու վրա ու գրավեցին նրանց դիրքերը։

### ՀՐԱՄԱՆԸ ՏԵՂ ՀԱՍՑՎԵՑ

Երբ թշնամին մոտեցավ Վորոնեժին, կոմերիտականները կոմունիստների ղեկավարությամբ մոտ մեկ ամիս հերոսաբար պաշտպանում էին հարազատ քաղաքը։ Այդ մարտերում շատերի հետ անմահացավ Իլյա Կոլոդոչկինի անունը։ Գնդի մի վաշտ, գտնվելով ուղեկալում, հակառակորդի շրջապատման մեջ մնաց։ Հարկավոր էր գնդի շտաբից շտապ կերպով վաշտի հրամանատարին հասցնել մարտական հրամանը։ Իլյան սողալով առաջ գնաց։ Թշնամին նկատեց նրան և փոթորկային կրակ բացեց։ Տղան վիրավորվեց։ Դենիկինյանները մոտեցան։ Զինվորներից մեկը խզակոթով խփեց նրա մեջքին. Իլյան չշարժվեց։ Համոզվելով, որ սպանված է, նրանք գնացին։ Ծանր վիրավոր վիճակում Իլյա Կոլոդոչկինը սողաց երկու կիլոմետր տարածություն։ Նա մերթ ընդ մերթ կորցնում էր գիտակցությունը, բայց համառորեն գործադրում էր բոլոր ուժերը և առաջ սողում։ Նա հրամանը հասցրեց հրամանատարին և վաշտը մարտերով ճեղքեց թշնամու պաշտպանությունն ու միացավ իր գնդին։

### ՀԱՅՐԵՆԻՔԻ ՀԱՄԱՐ

1920 թվականի սկզբներին Կարմիր Բանակի զորամասերը ժամանակավորապես թողեցին Օդեսան։ Դենիկինյանները ներխուժեցին քաղաքը։ Կոմունիստների և կոմերիտականների մի ընդհատակյա խումբ մնաց քաղաքում և շարունակեց պայքարը։ Բայց թշնամուն հաջողվեց ձերբակալել 17 պատանու։

...Բանտի պատերի մեջ սկզբում նրանք լուռ էին։ Հետո մեկը կիսաձայն սկսեց երգել, և մյուսներն անմիջապես ձայնակցեցին նրան։

— Ծեծել բոլորին,— հրամայեց սպան,— ջարդել մռութները։

Եվ նրանց ծեծեցին։ Խզակոթերով, սապոգներով ու մտրակներով այնքան խփեցին, որ ուշագնաց եղան։ Հետո նրանց մեկ-մեկ տարան հարցաքննության։

ակտիվ դերը խաղացել են Ղուկաս Ղուկասյանը, Աղասի Խանջյանը, Արմենակ Բուդաղյանը։

Սովետական կարգերի համար պայքարի դուրս եկած հայ աշխատավորության առաջին շարքերում կոմունիստների հետ



ԱՂԱՍԻ ԽԱՆՋՅԱՆ

— Ձեզ ծեծել են, հա՞,— կեղծ կարեկցանքով ասաց նույն սպան,— անպիտաննե՛ր։ Ոչինչ, հանգստացեք, ձեզ այստեղ ոչ ոք չի ծեծի։ Այստեղից դուք ուղիղ տուն կգնաք, որտեղ ձեզ են սպասում ձեր ծնողները։ Խեղճ ծերունիներ։ Նրանք այսօր ինձ մոտ էին եկել։

— Ձեզ մո՞տ,— զարմացավ պատանին։

— Այո, այո, ինձ մոտ էին եկել,— պատասխանեց սպան և մի քիչ թեքվելով դեպի նա, կամացուկ ավելացրեց,— եթե պատմեք այն ամենը՝ ինչ գիտեք, բոլորդ էլ ազատ կարձակվեք...

Ծեծված ու տանջահար պատանին ատելությամբ նայեց սպային.

— Ոչ, ես ոչինչ չգիտեմ, ոչինչ չեմ ասի։

— Դուք գիտեք,— ասաց սպան և թիկնելով բազկաթոռին խռպոտ ձայնով հրամայեց.— Ռեզի՜ն։

...Պատանուն թվում էր, թե պատերը շարժվում են և հիմա փուլ կգան։ Ռեզինե հաստ մահակը անխնա իջնում էր նրա ուսին, մեջքին, դեմքին։

Այդպես հարցաքննեցին նաև մյուսներին։

Հետո բոլորին հավաքեցին մի տեղ։

— Կրասնոշչեկինա Իդա,— ասաց սպան,— դատարանը ձեզ դատապարտում է մահվան, ձեզ պետք է կախենք։

— Միայն այդքա՞նը,— ժպտաց անվախ աղջիկը՝ խաղալով խոպոպիկների հետ,— մենք մեռնում ենք ջահել, բայց մեռնում ենք հանգիստ, որովհետև գիտենք, որ մեր ճանապարհով կգնան նոր, հարյուրավոր հայրենասերներ, իսկ ձեր երգը երգված է արդեն։

Այդ խիզախ պատանիներն ու աղջիկները հերոսաբար ընդունեցին մահվան դատավճիռը։ Նույնիսկ մահապատժից առաջ, կյանքի վերջին րոպեներին նրանք չընկճվեցին։

### ԱՐԺԱՆԻ ՊԱՐԳԵՎ

Այսպես խիզախորեն, արհամարհելով բոլոր տեսակի դժվարությունները և նույնիսկ մահը, կոմերիտականները պաշտպանում էին մեր հայրենիքը։

Քաղաքացիական պատերազմում ցուցաբերած հերոսության համար կոմերիտմիությունը պարգևատրվեց Կարմիր Դրոշի շքանշանով։

կռվում էին նաև այս երեք մարտական ընկերները։ Բայց նրանցից միայն՝ Աղասի Խանջյանին բախտ վիճակվեց տեսնել իր ժողովրդի ազատագրումը։

Ղ. Ղուկասյանն ու Ա. Բուդաղյանն ընկան հերոսի մահով։



ԱՐՄԵՆԱԿ ԲՈՒԴԱՂՅԱՆ.



# Դրոնտ աղավնին

ԿԱՐԵՆ Ա. ՍԻՄՈՆՅԱՆ

(Գիտա-ֆանտաստիկական պատմվածք)

*Կենդանաբանական այգու ավագ գիտաշխատող Լևոն Արամյանը բրիտանական տիրապետության տակ գտնվող Մավրիկիա կղզու Պորտ-Լուի քաղաքից մի նամակ ստացավ: Գրում էր Մասկարենյան կղզիներում ուսումնասիրություններ կատարող արշավախմբի ղեկավար Ջանյանը, որը երկար տարիներ աշխատել էր Արամյանի հետ: Ջանյանը նամակում հայտնում էր, որ Մավրիկիա կղզում բռնել է դրոնտ աղավնիների մեկ զույգ և արդեն ուղարկել է Արամյանին:*

*...Պատկերացրեք կարճահասակ, նիհարակազմ, ճաղատ գլխով մի ծերունի, որը սիրում է հագնել սրճագույն կոստյում և ծածկել նույն գույնի լայնեզր գլխարկ: Այդպիսին էր Արամյանը: Նա լուրջ էր, ժպիտներ չէր շռայլում, հայտնի էր յուրահատուկ ճշտապահությամբ և միշտ զբաղված էր անհետաձգելի գործերով:*

*Նամակը ստանալուց հետո նա փոխվեց այնպես, որ պատեհ-անպատեհ առիթներով սկսեց շաղակրատել աշխատակիցների հետ, սրամտությունից զուրկ կատակների վրա ծիծաղում էր լաց լինելու աստիճան, իսկ մենակ մնալիս հանում էր նամակը ու նորից կարդում:*

*Արամյանի այդ տարօրինակ վարքը առիթ դարձավ բազմաթիվ շշուկների, որոնք սկսեցին շրջել կենդանաբանական այգու աշխատակիցների մեջ:*

*Երբ աշխատանքային օրն ավարտվեց, Լևոն Արամյանը, վերջապես, փակվեց իր առանձնասենյակում և սկսեց քրքրել գրականությունը, որոնելով ճանապարհորդների պատմությունները դրոնտ կոչվող հազվագյուտ աղավնիների մասին:*

*Կենդանաբանական այգու պահակը մինչև մութն ընկնելը դարպասները չփակեց, մտածելով, որ Արամյանը ուր-որ է դուրս կգա առանձնասենյակից:*

*Բայց երբ երկնքում սկսեցին առկայծել աստղերը, և Լևոն Արամյանի առանձնասենյակում էլ վառվեց էլեկտրական լամպը, Վահրամ քեռին մի փոքր տատանվելուց հետո միայն վճռականությամբ ուղղվեց դեպի նա:*

*Դռան թակոցին ոչ ոք չպատասխանեց:*

*Վահրամ քեռին շփոթվելով այդ չարագուշակ լռությունից, զգուշությամբ հրեց կաշեպատ դուռն ու ներս մտավ:*

*Գրասեղանի առաջ նստած էր Արամյանը: Նա խորասուզվել էր ընթերցանության մեջ: Մի քանի բաց հատորներ շարված էին սեղանի վրա, իսկ մի քանիսն էլ հատակին պառկած հերթի էին սպասում:*

*Վահրամ քեռին թեթևակի հազով մաքրեց կոկորդը: Սակայն Արամյանը ոչ մի ուշադրություն չդարձրեց, ավելի շուտ՝ չլսեց նրան: Պահակը որոշեց առաջ գնալ, բայց միտքը փոխելով, նորից բացեց առանձնասենյակի դուռն ու այնպիսի աղմուկով փակեց, որ Արամյանը հայացքը մի պահ կտրեց գրքից ու տեսնելով այցելուին, ձեռքով մեքենայաբար ցույց տվեց լուսամուտի մոտ դրված բազմոցն ու նորից տարվեց կարդալով:*

*Վահրամ քեռին նստեց:*

*— Այո...— կիսաձայն ասաց Արամյանը, գրքի լուսանցքում ինչ-որ նշում կատարելով:*

*— Բա՞ն ասացիր, Լևոն ջան,— պատրաստակամությամբ հարցրեց պահակը, բայց Լևոն Արամյանը նրան չլսելով, շարունակեց բարձրաձայն մտածել:*

*— Այո...— կրկնեց նա, մատիտը ցած դնելով:— Ճիշտ է... Մավրիկիա կղզում բնակվում է անթև դրոնտը, Ռեյունիոն կղզում՝ սպիտակը, իսկ Ռոդրիգեսում՝ ճգնավորը... Երևի անթև դրոնտն է մարդկանց աչքից թաքուն ապրել ու զարգացել մինչև մեր օրերը:*

*Օգտվելով Արամյանի փոքրիկ դադարից, Վահրամ քեռին այնպիսի ուժգնությամբ հազաց, որ գիտնականին վերջնականապես կտրեց մտքերի աշխարհից:*

*— Ա՜... Վահրամ քեռի,— ժպտաց Արամյանը ոտքի կանգնելով,— լսում եմ քեզ, ի՞նչ կա:*

*— Լևոն ջան... եկել եմ ասելու, որ արդեն ուշ է,— անհամարձակությամբ սկսեց պահակը:*

— Ո՞ւր է... հա՛-հա՛-հա՛,— ծիծաղեց Արամյանը, մի ավելորդ անգամ ևս հաստատելով այն շշուկների ճիշտ լինելը, որոնք հասել էին նաև Վահրամ բեռու ականջին:— Ասում եմ՝ ո՞ւր է... Իսկ դու լսե՞լ ես չթռչող աղավնի դոդոյի մասին կամ դրոնտի մասին:

— Աղավնիների մասին ես շատ եմ լսել,— վիրավորված տոնով ասաց պահակը, ցանկանալով հասկացնել Արամյանին, որ, համենայն դեպս, քիչ բան չէ մի ամբողջ կյանք կենդանաբանական այգում անցկացնելը:

— Դրոնտը քո իմացած աղավնիներից չէ, Վահրամ բեռի,— զգալով պահակի վրդովմունքը, հաշտվողական տոնով ասաց Արամյանը:— Այդ աղավնուն արդեն երկու հարյուրամյակ ոչ ոք չի տեսել: Գիտնականները դրոնտին դասում են ոչնչացած կենդանիների շարքը. ինչպիսիք են բերբերյան առյուծը կամ թեկուզ՝ աֆրիկական կվագգան:

— Իսկ ինչո՞ւ են ոչնչացել այդ չտեսնված աղավնիները,— հարցրեց Վահրամ բեռին:

— Դրոնտի միսը շատ յուղալի էր ու համեղ,— ասաց Արամյանը:— Տասնութերորդ դարում պորտուգալական գաղութարարները Հնդկաստանում գտնվող իրենց գաղութները գնալու համար ճանապարհորդում էին ամբողջ տասնութ ամիս: Մասկարենյան կղզիներով անցնելիս, որոնք գտնվում են Մադագասկարից դեպի արևելք, նավաստիները իրենց պաշարը լրացնում էին դրոնտի մսով:

— Երևի շատ հեշտ էր նրանց բռնելը, հը՞...— եզրակացրեց Վահրամ բեռին:

— Դրոնտներին սպանում էին սովորական գավազաններով,— ասաց Արամյանը:— Աղավնիները չէին կարողանում ոչ թռչել և ոչ էլ լավ վազել: Իսկ հետո դրոնտի ձվերով ու մսով սկսեցին սնվել գաղութարարների խոզերն ու կապիկները:

— Ուրեմն՝ աղավնիներն այդպես էլ ոչնչացա՞ն:

— Այո:

— Եվ նրանցից ոչինչ չմնա՞ց:

— Չէ՛,— քմծիծաղեց Արամյանը:— Ինչո՞ւ չէ, մնացել է: Մի ոտք ու մի քանի ոսկոր պահպանվում են Լոնդոնի թանգարանում, մի քանի ոտք ու մի գլուխ՝ Օքսֆորդում, կրծքոսկրը՝ Փարիզում, կտուցը՝ Կոպենհագենում և գանգը՝ Պրագայում:

— Ափսո՜ս,— նկատեց Վահրամ բեռին վշտացած:

— Իհարկե, ափսոս,— համաձայնվեց Արամյանը և, քանդելով բաճկոնի կոճակները, ժիլետի գրպանից հանեց խնամքով չորստակ ծալած նամակն ու պարզեց Վահրամ բեռուն:— Տեսնո՞ւմ ես,— շարունակեց նա,— այստեղ գրված է, որ մեր արշավախումբը Մավրիկիա կղզում գտել է դրոնտ աղավնիների մի զույգ: Դա չտեսնված գյուտ է: Մեր կենդանաբանական այգին կդառնա աշխարհում ամենահետաքրքիր այգիներից մեկը:

— Էդ բոլորը շատ լավ, Լեոն ջան,— նամակը առանց կարդալու վերադարձնելով Արամյանին, ասաց Վահրամ բեռին:— Բայց ախր ուշ է:

Արամյանը միայն ծիծաղեց ու նորից թաղվեց ընթերցանության մեջ, չնկատելով, թե ինչպես պահակը դեմքի հուսահատ արտահայտությամբ ամբռմբացրեց գլուխը և դուրս եկավ աշխատասենյակից:

* * *

Մոտ մեկ ամիս հետո կենդանաբանական այգու դարբասների առաջ կանգ առավ պաղպաղակ տեղափոխող մի սովորական մեքենա: Բայց վարորդի խցիկից սպիտակ խալաթով գործակատարի փոխարեն, դուրս եկավ փոստատարը և Վահրամ բեռուն խնդրեց ստորագրել ծանրոցների ստացման փաստաթղթերը:

Հետո նրանք բացեցին մեքենայի հերմետիկորեն փակվող դուռն ու իջեցրին երկու հատ ապակյա արկղ, որոնք ծածկված էին եղյամով:

— Վահրամ բեռի... արկղները սառը տեղ պիտի պահել: Մեջը սառույց կա,— ասաց փոստատարը:

Մենակ մնալով, պահակը սկսեց զննել արկղները, որոնք իսկապես լի էին սառույցով: Չնայած եղյամի բարակ ձյունանման շերտը դրսի ջերմությունից անմիջապես հալվել էր, բայց Վահրամ բեռին



digitised by A.R.A.R.@

չկարողացավ զանազանել, թե ի՞նչ կա սառույցի մեջ։ Նա որոշեց կարդալ հետադարձ հայացքն։ Ակնոցը դրեց աչքերին ու տառ առ տառ կարդաց. «Մ ա վ ր ի կ ի ա»։

Պահակի բթարմատից ակնոցը ցած սահեց։ Նա օդում ճարպկությամբ որսաց այն ու վազեց հեռախոսի մոտ։

— Լեոն ջան...— գոչեց նա, լսափողում լսելով գիտնականի ձայնը,— կասեմ երկու հատ արկղ եմ ստացել... հա... ծանրոց, էլի։ Հենց բիչ առաջ... Մավրիկիայից... Գալի՞ս ես։

Լսափողը ցած դնելուց հետո, Վահրամ քեռին ձեռքերը իրար շփեց ու արկղներին նայելով, աչքով արեց, իբր՝ «Մենք վաղուց էինք ձեզ սպասում...»։

Հետո մի անգամ էլ պտտվեց արկղների շուրջը, ըստ իր սովորության, բազմանշանակալից տմբտմբացրեց գլուխը...

— Հը՞, Վահրամ քեռի,— ժպտալով նրան մոտեցավ Արամյանը։

— Լեոն ջան...ախր...— պահակը մատով ցույց տվեց արկղները,— տեսնո՞ւմ ես... Մավրիկիա գրված է։ Դա նշանակում է, որ...

— Նշանակում է, դրանք աղավնիները մենք ստացել ենք,— պահակի խոսքը վերջացրեց Արամյանը։

— Հա, ստացել ենք,— Վահրամ քեռու ձայնը խզվեց,— ստացել ենք... Բայց ինչպե՞ս։ Իհարկե, սատկած։

— Դու այդ ինչե՞ր ես խոսում, Վահրամ քեռի։

— Ի՞նչ պիտի խոսեմ... Ասում եմ, որ աղավնիները ուղարկել են ոչ թե կենդանի, այլ սառեցրած։

— Սառեցրա՞ծ... Սատկա՞ծ...— Հազիվ արտասանեց Լեոն Արամյանը և ձեռքը տարավ դեպի ճաղատ գլուխը։— Իսկ... իսկ որտե՞ղ են այդ աղավնիները։

— Այ, հրեն...արկղների մեջ։

Լեոն Արամյանը մոտեցավ արկղներին ու սկսեց կարդալ նրանց վրա ամրացրած բացատրագրերը։ Հանկարծ նա կտրուկ շարժումով ուղղվեց, նայեց պահակին ու ձայն տվեց.

— Հապա, օգնիր ինձ, Վահրամ քեռի... Արկղները տանենք առանձնասենյակ։ Աղավնիները կենդանի են։ Այո, այո, կենդանի են։

Վահրամ քեռին բռնեց արկղի մի ծայրից, յուրովի մտածելով՝ «Խեղճ Լեոն... Խելքը թռցրեց այս սառնամանյական աղավնիների համար։ Լսվա՞ծ բան է, որ ամիսներ շարունակ սառույցի մեջ ճանապարհորդող հավքը չսատկի»։

* * *

**Առանձնասենյակի հանդիսավոր լռության մեջ Լեոն Արամյանը վերցրեց մուրճը և ամբողջ ուժով հարվածեց արկղներից մեկին։**

Փշրված սառցակտորների միջից երևաց դրոնտ աղավնու փայլացած մարմինը։

— Օհո՜...— գոչեց Վահրամ քեռին։

— Ահա՜...— հաղթական ծոր տվեց Արամյանը,— ահա՛ դրոնտ աղավնին։

Այդ զարմանալի թռչունը ուներ մոտ յոթանասուն սանտիմետր բարձրություն և կշռում քսանհինգ կիլոգրամից ոչ պակաս։ Նրա սառած թևերը շատ փոքր էին, իսկ կտուցը՝ մեծ ու լայն։

Արամյանը սառած թռչունին ծածկեց գորգով և նրա վրա ուղղեց ռեֆլեկտորի ջերմացնող ճառագայթները։

Պահակը լռությամբ հետևում էր նրա շարժումներին ու դառնությամբ մտածում. «Ահա՛ թե ինչ են խելոք մարդիկ աշխարհից պակասում... Չէ, ձեռքից գնաց Լեոնը. տես, է, ուզում է սատկած հավքին կենդանություն տալ»։

Րոպեները անցան լռության մեջ։ Արամյանը մտասուզված մերթ նայում էր գորգով ծածկված աղավնուն, մերթ՝ ժամացույցին։ Իսկ պահակը յուրաքանչյուր շարժումը որսալով, նորանոր եզրակացություններ էր հանգում։ Հանկարծ նրան թվաց, թե սատկած դրոնտը շարժվեց, և ծերունին հարցական նայեց Արամյանին։ Վերջինս նույնպիսի հայացքով նայում էր Վահրամ քեռուն։

— Շարժվե՞ց...— չկարողացավ իրեն զսպել պահակը։

— Շարժվե՜ց,— եղավ պատասխանը։

Աղավնու վրա գցած գորգը սահեց ու ընկավ։ Վահրամ քեռին ափերով ծածկեց աչքերը։ «Ես է՞լ եմ խելքս կորցնում, ինչ է։ Է՞ս ինչ բան էր»— մտքում ինքն իրեն հարցրեց նա և միանգամից սթափվեց Արամյանի բարձր ձայնից։

— Վահրամ քեռի... կենդանացա՜վ...



Պահակը մատների արանքով նայեց սատկած աղավնուն։

Բայց... դրոնտ աղավնին կանգնել էր սենյակի կենտրոնում և իր մեծ կտուցով հարդարում էր փետուրները։

— Երա՞զ է... — թույլ ձայնով հարցրեց պահակը։

Պատասխանը եղավ աղավնու մընչյունը։

* * *

Երբ Մասկարենյան կղզիներից ստացված աղավնիները կենդանացել ու արդեն գտնվում էին վանդակներում, և երբ արդեն մութն էլ ընկել էր, Վահրամ քեռին զգույշ քայլերով մոտեցավ Արամյանի աշխատասենյակին ու դուռը կամաց հրեց.

— Լևո՞ն...

— Դո՞ւ ես, Վահրամ քեռի... — Արամյանը վայր դրեց գրիչն ու նայեց պահակին։

— Լևոն ջան... եկել եմ ասելու, որ...

— Աղավնիները ինչպե՞ս կենդանացան... Դա շատ պարզ է, Վահրամ քեռի։ Դու հետևե՞լ ես, թե մեր ավազանում գայլաձուկը ինչպես է ձմեռն անցկացնում։

— Հա՛... ջրերն ընկնելուն պես քուն է մտնում։ Բայց, Լևոն ջան, ես ուրիշ բան եմ ուզում ասել...

— Ոչ թե քուն է մտնում, — պահակի վերջին խոսքերը կարծես չլսելով, շարունակեց Արամյանը, — այլ թմրում է։ Բայց սառույցի մեջ ամբողջ ձմեռն անցկացնելուց հետո էլ կենդանանում է, որովհետև նրա արյունը պարունակում է այնպիսի նյութեր, որոնք նույնիսկ մեկ աստիճան սառնամանիքին էլ չեն սառչում։

— Ի՞նչ է, դրոնտ աղավնի՞ն էլ այդպիսի արյուն ունի, — չհամբերեց պահակը։

— Ո՛չ... — ժպտաց Արամյանը։ — Նրա արյունը սովորական է և ցրտից անմիջապես սառչում է, առաջացնելով ասեղնաձև բյուրեղներ, որոնք ծակոտում են երակները։ Դա նշանակում է, որ աղավնին արդեն սատկել է։

— Բա ինչու՞ չսատկեցին։

— Չսատկեցին, որովհետև աղավնիների արյան մեջ ներարկված էր այնպիսի նյութ, որ սառնամանիքի ժամանակ բյուրեղացում չի առաջացնում։



Նկ. Ս. ՍՏԵՓԱՆՅԱՆԻ

Այդ վիճակում կյանքի պրոցեսները չափազանց դանդաղում են։ Ամիսներ շարունակ կարելի է կենդանիներին պահել սառեցրած վիճակում և ցանկացած ժամանակ նրանց ջերմացնել ու կենդանացնել։

— Էդ հո լա՜վ բան է... — ոգևորվեց պահակը և ձեռքերն իրար շփեց։

— Իհարկե, իհարկե, Վահրամ քեռի։ — Պատասխանեց Արամյանը և մի մաքուր թուղթ վերցնելով, շարունակեց ընդհատված գրությունը։

Պահակը մի առ ժամանակ լուռ նստեց և աղմուկով հազաց։

— Է՞լ ինչ կա, Վահրամ քեռի, — հարցրեց Արամյանը։

— Լևոն ջան, եկել եմ ասելու, որ արդեն ուշ է...

Կենդանաբանը նայեց մութ լուսամուտներին, առանց շտապելու ոտքի կանգնեց, ափսոսանքով հայացք նետեց գրքերին ու գրասեղանին և ծածկելով սրճագույն գլխարկը, դուրս եկավ։

Երբ Վահրամ քեռին մարեց նրա առանձնասենյակի լույսերը, կեսգիշերը վաղուց էր անցել։



# ԱԳԱՀԻ ԲԱԺԻՆԸ

*(Հայկական ժողովրդական հեքիաթ)*

ԳՐԻԳՈՐ ԵՂԻԿՅԱՆ

Մի աղքատ մարդ քլունգն ուսին,
Առավոտյան մութ ու լուսին,
Անտառ գնաց, որ կոճղ հանի,
Բերի ձմռան պաշար անի։
Հենց առաջին կոճղը հանեց,
Էս աղքատի բախտը բանեց.
Կոճղի տակից, սուտ էր, թե ճիշտ,
(Դե հեքիաթն էլ էսպես է միշտ),
Ոսկի հանեց, ոսկի՝ բուռ-բուռ,
Դիզեց, դարձավ մի մեծ բլուր։
— Ա՛յ քեզ պատիժ, ես ի՞նչ անեմ,
Էսքան ոսկին ո՞նց տուն տանեմ։—
Միտք արեց նա, նայեց ճամփին,
Որ մի անցորդ թե հանդիպի,
Ջեն տա, ասի՝
Գա միասին
Ոսկին առնեն
Ու տուն տանեն։
Բախտի բան էր, թե սատանի,
(Դե մարդ ինչպե՞ս գլուխ հանի),
Տեսավ յոթը անբեռ ուղտով
Մի տերտեր է գալիս ճամփով։
«Էս լավ եղավ,—աղքատն ասավ,—
Աստծու մարդն է, բախտիս հասավ,
Գաղտնապահ են սրանք, բարի,
Բեռս ապահով տուն կտանի»։
— Բարո՛վ տեր հայր, մի բան ասեմ։
— Ի՞նչ կա, օրհնած, ասա լսեմ։
— Բա չես ասի, պապիս հերը
Մեր պապական ոսկիները
Էս անտառն էր բերել հորել,
Ես գտել եմ, հանել նորեն
Ու յոթ օր է ճամփա պահում,
Ազնիվ մարդու չեմ պատահում,
Որ վստահեմ՝ քոմակ անի,
Ոսկիները մեր տուն տանի.
— Տո՛, հեր օրհնած, դե շուտ ասա,
Բախտդ բերեց՝ ես քեզ հասա...
Ու հենց տեղում պայման արին՝
Յոթը ոսկի բեռնատարին։
Յոթ ուղտաբեռ զանձով ծանր,
Ճամփա ընկան մանր-մանր։
Բայց չհասած ճամփի կեսը,
Մեր տերտերին կերավ հերսը։
— Օրհնած կենաս, վարձս քիչ է,
Ախար յոթը ոսկին ի՞նչ է,
Գոնե մի բեռը ինձ տայիր։
— Մի բեռը քեզ, քշիր, տեր-հայր,
Քշիր գնանք,
Որ չուշանանք։
Բայց քիչ անցած, մեր տերտերը
Նորից կիտեց իր նոթերը.
— Օրհնած կենաս, վարձս քիչ է,
Յոթ բեռի մեջ, մի բեռն ի՞նչ է.
Գոնե երկուսը ինձ տայիր...
— Երկուսը քեզ, քշիր, տեր-հայր,
Քշիր գնանք,
Որ չուշանանք։
Իսկ տերտերը մի քիչ գնում,
Դժգոհում է, նորից տրտմում...
— Օրհնած կենաս, էսպես չեղավ,
Իմ բաժինը շատ քիչ եղավ...
— Հինգ բեռը քեզ, քշիր, տերտեր
Քո ռաստ եկած ժամն անիծվեր,
Քշիր գնանք,
Որ չուշանանք։
Բայց էն տերտեր անամոթը,



(Ա՛յ, կոտրվի նրա ոտը),
Մի քիչ հետո խիստ տրտնջում,
Էլի բաժին է պահանջում.
— Օրհնած կենաս, փայս քիչ է,
Տերտեր մարդուս էսքանն ի՞նչ է...
— Վա՛յ, ցավս քեզ, յոթ բեռն էլ քեզ.
Եվ աստծու կրակն էլ քեզ,
Քշիր գնա,
Բկիդ մնա։
Պաղ աղբյուրի երբ որ հասան,
Երկուսով էլ դադար առան։
Տերը ծնկեց, աղոթք արավ,
Իսկ աղքատը շատ էր ծարավ։
Ոսկե մի թաս հանեց ծոցից,
Որ պահել էր գտած գանձից
Եվ էդ թասով նա ջուր առավ,
Որ զովացնի սիրտը ծարավ։



Նկ. Տ. ԹՈՔՄԱՋՅԱՆԻ

Տերտերն հենց որ թասը տեսավ,
Աչքը չռեց, վրա հասավ.
— Օրհնած, ինձ տուր՝ ես էլ խմեմ,
Սիրտս էրվում է, ծարավս առնեմ։—
Խմեց պրծավ,
Հետո դարձավ.
— Էս թասն ո՞ւր ես քեզ մոտ պահել,
Տերտեր մարդո՛ւն է սա վայել։—
Բայց աղքատին՝ էստեղ արդեն,
Ննց որ առանց դանակ մորթեն.
Խիստ բարկացավ,
Կրակ դարձավ,
Ջեռքը ուժգին գետին զարկեց
Ու մի բուռ տաք ավազ ճանկեց
Եվ ավազը թափով շփեց
Տեր-ազահի աչքերի մեջ.
— Ա՛ռ, աչքածակ, դե կշտացի՛ր,
Այսուհետև չափդ իմացիր։
Ագահ տերը, նույն վայրկյանին
Կուրացավ ու նստեց ճամփին։
Աղքատ մարդը ոսկին առավ,
Առոք-փառոք իր տուն տարավ։



Ե. ԽԱՉԱՏՐՅԱՆ — Նկ. Կ. ՀԱՑԱԳՈՐԾՅԱՆԻ

*Կիրակի օր էր։ Պեկինի «Բարեկամություն» կոչվող հյուրանոցի ակումբում իրարանցում էր տիրում։*

*— Դե, քեզ տեսնեմ, Նիկոլայ, մեքենայի գալուն վայրկյաններ են մնացել, աշխատիր ամոթով չմնալ,—սպառնում էր Հայկը քալանչա[1] խաղացող ընկերոջը։*

*Հենց այդ պահին լուսամուտի մոտ կանգնած փոքրիկ Վոլոդյան զիլ ձայնով ծղրտաց.*

*— Մեքենա՛ն, մեքենա՛ն,—ու խոսքի կեսին գլխանկցելով, որ ներկա եղողներից բոլորը չեն կարող հասկանալ իրեն, կոտրատված չինարենով ավելացրեց,—չիցչը. չիցչը, ցոլա Բեխե՛յ[2],—և բռնելով մի փոքրիկ աղջկա ձեռքից, արագ դուրս թռավ։*

*Մի քանի րոպե անց մենք արդեն ավտոբուսով սլանում էինք դեպի քաղաքային զբոսայգին։ Մեզ հայտնի էր, որ մայիսի 5-ը չին ժողովրդի ազգային տոնն է, և խնդրեցինք մեզ ուղեկցող թարգմանիչ Չի Մի-լանին պատմել այդ տոնի մասին։*

*— Ոչ, բարեկամներ,—մեղմ ժպիտով մերժեց մեզ Չի Մի-լանը,—ես խոստացել եմ այդ հաճույքը թողնել իմ պապին։ Նա շատ է սիրում այս տոնը և, երբ իմացավ, որ դուք էլ եք մասնակցելու, ուրախությամբ որոշեց գալ ու պատմել այդ մասին։*

*Ավտոբուսը տեղ հասավ։ Փողոցում ասեղ գցելու տեղ չկար։ Մարդիկ գալիս էին շարքերով, մեծ ու փոքր խմբերով, փողային նվագախմբերով, ազգային երաժշտական գործիքներով։ Երգ, ծիծաղ, ուրախություն խառնվել էին իրար։ Եվ այս անվերջ շքերթը գարնանային հորդ գետի նման հոսում էր դեպի քաղաքային զբոսայգին։*

*Չի Մի-լանի պապը՝ Չի Ծեն-խուան ժպտադեմ մոտեցավ մեզ և բարևեց։ Մենք խմբի ղեկավարությունը հանձնեցինք ծերունուն։ Նա քայլերն ուղղեց դեպի փոքր լիճը։*

*— Ըստ պապենական ավանդության, այսօր պետք է նավակով զբոսնել,—բացատրում էր ծերունին։*

[1] Քալանչա—չինական խաղ, որը նմանություն ունի բիլիարդին։
[2] Մեքենան, մեքենան, գնանք Բեխեյ (զբոսայգու անուն)



*Տեղ հասնելով, մի մեծ նավակ վարձեցինք։*

*Պատանիներն ու աղջիկները, հերթափոխելով միմյանց, թիավարում էին նավակը, իսկ ծերունին մի լուրջ հայացք գցելով դեպի հեռուն, ժողովեց մտքերը և սկսեց.*

*— Երկու հազար տարի առաջ Չինաստանը մանր իշխանություններից ու թագավորություններից կազմված մի երկիր էր. Չին մեծ բանաստեղծ Չու Յյուլ-յուանի հայրենիքը, որ գտնվում էր Միլո գետի ափին, մնում էր Չու թագավորության ճիրաններում։ Բազմաչարչար ժողովրդի միակ մխիթարողն ու ուրախացնողը Յյուլ Յուանն էր։ Նրա համեստ փանզայի[1] դուռը միշտ բաց էր կարիքավորների առաջ, նրա քաղցրահնչյուն խուցին[2] միշտ պատրաստ էր հայրենակիցների վիշտն ու խինդը երգելու համար։*

*Ժողովուրդը աչքի լույսի պես սիրում ու փայփայում էր իր երգչին։ Բանաստեղծի համբավը հասնում է նաև թագավորին, որը արևելքի տիրակալներին հատուկ դաժանության հետ մեկտեղ, զուրկ չէր նաև փառամոլությունից։ Շատ չանցած, թագավորի կատարածուները ներս են խուժում բանաստեղծի խրճիթը և բռնի ուժով տանում են նրան թագավորի մոտ։ Շողոքորթող առաջաբանից հետո թագավորը բանաստեղծին առաջարկում է դառնալ իր պալատական երգիչը, խոստանալով նրան այն ամենը, ինչ վայել է պալատական բանաստեղծին։ Լսում է թագավորին վրդովմունքից գունատված բանաստեղծը ու դառը ժպտում։ Ապա զարկում է խուցու լարերին, ու երգում.*

«Քո վեհաշուք պալատներում ռամկի խուցին չի հնչի,
Վշտից ծնված իմ երգերում արքան հաճույք չի գտնի։
Երգիս ակունքը՝ բազավոր,
Ձայնիս աղբյուրը, բազավոր,
Ժողովուրդն է աշխատավոր»։

*Այնտեղ ծերունին լռեց, աչքերը կկոցեց և ընկավ մտածմունքի մեջ։ Ես էլ իմ հերթին փակեցի աչքերս և մտովին պատկերացրի հպարտ ու վեհ չին բանաստեղծին՝ համառ հայացքը սևեռած թագավորին, իսկ նրա կողքին՝ մի ուրիշ մարդու՝ բյամանչյան ձեռքին։ Ես ճանաչեցի նրան, դա իմ հեռավոր հայրենիքի՝ բազմաչարչար բանաստեղծ Սայաթ-Նովան էր։ Նա մոտեցավ ինձ և ականջիս շշնջաց՝ «Ռամիկ եմ, իշխան դառնալ չեմ ուզում»։*

*Ծերունու հուզմունքից դողացող ձայնը սթափեցրեց ինձ մտքերից, և ես լարեցի ուշադրությունս։*

*... Մի օր էլ Չու թագավորը որոշեց հարձակվել հարևան Յին թագավորության վրա՝ նոր ավար, նոր փառք ձեռք բերելու համար։*

*Առանց այդ էլ բազմատեսակ հարկերի տակ տանջվող ու տառապող ժողովրդի գլխին ծանրացավ նաև ռազմական հարկը։ Հայտարարվեց զորահավաք։ Մարդիկ գնում էին կռվելու։ Իսկ աղքատականները, օգտվելով առիթից, հարձակվում էին անպաշտպանների վրա։ Վշտից ու սարսափից հուսահատության հասած մարդիկ խմբերով գալիս էին իրենց հույս ու ապավեն Յյուլի մոտ՝ փրկության ելք որոնելու։ Լսում էր նրանց սրտակեղեք*



*գանգատները ծեր բանաստեղծը, և նրա դեմքը օրըստօրե մռայլվում էր, դառնում մտախոհ։ Փոքրիկ խուցին նրա մատների տակ չէր դադարում սրտամորմոք հնչյուններ արձակելուց, իսկ մեղմ ձայնը, շոյելով ունկնդիրների լսելիքը, հասնում էր նրանց հոգու խորքը և բույն արձագանք գտնում նրանց սրտերում։*

«Իմ հայրենիք, տանջված, ավեր,
Արտերդ արյան լճեր դարձան,
Իմ հարազատ ռանչպար ախպեր,
Սիրտդ էլ դարձավ մեծ ծով արյան»։

*...Երգում էր բանաստեղծը, իսկ նրա լարված ուղեղը անընդհատ ելք էր որոնում։*

*Մայիսյան մի գեղեցիկ առավոտ, երբ արևն իր*

---

[1]. Չինական խրճիթ.
[2]. Հին երաժշտական գործիք։

ամոթխած հայացքով բարի լույս էր ավետում աշխարհին, Ցյույ Յուանը, որպես մարմնացած մի բողոք, կանգնեց թագավորի առաջ։ Երկար ժամանակ նրա մորմոքող վիշտը այժմ մաղձի վերածվելով, հեղեղի նման թափվում էր թագավորի գլխին, որը ապշել էր բանաստեղծի անսպասելի հանդգնությունից։ Իսկ ըմբոստացած բանաստեղծը ավելի ու ավելի բորբոքվելով, շարունակում էր ցասման իր երգը.

«Ձու աշխարհի տիրակալը երկնից ընկած պատիժ է,
Եղբայրասպան պատերազմներ բորբոքող մի դահիճ է»։

... Եվ ցասումնալից բանաստեղծը, որպես բողոք, թագավորական պալատի աշտարակից իրեն նետում է արագահոս Միլո գետը։ Գետի հախուռն ալիքները կլանելով նրա մարմինը, տանում են դեպի անհայտ հեռուները։

Այստեղ ծերունին լռեց։ Մի հարցական հայացք գցեց մեզ վրա և, համոզվելով, որ իր պատմածը մեծ տպավորություն է գործել ունկնդիրների վրա, շարունակեց.

— Այդ դեպքից հետո երկու հազար տարի է անցել, բայց չին ժողովուրդը չի մոռանում իր հայրենասեր հերոսին։ Մինչ Չինաստանի ազատագրումը նրա մահվան տարեդարձի օրը նշվում էր որպես սգի օր։ Նույնիսկ շրջում էին նավակներով, պատրաստած չժունցին[1] նետում ջուրը, որ ծովերի արքան կուշտ լինի, ձեռք չտա Ցյույ Յուանին։ Հիմա մեր ժողովուրդը այլ կերպ է հիշում իր հերոս բանաստեղծին։ Սգի փոխարեն նա կազմակերպում է ուրախ տոնախմբություններ, թիավարման, լողի մրցումներ, հրավիրում է ձեզ նման թանկագին հյուրերի, իսկ թխած չժունցին էլ ջուրը նետելու փոխարեն ինքն է անուշ անում։



[1] Չժունցի—չինական բլիթ։




ՆՈՒՐԱԴԻՆ ՅՈՒՍՈՒՓՈՎ
(Դաղստանցի երիտասարդ բանաստեղծ)

(Հեքիաթ)

Նկ. Կ. ՀԱՑԱԳՈՐԾՅԱՆԻ

1

Ցորենի հատիկ տեսավ աղավնին,
Ասաց աղավնին փոքրիկ ցորենին.
«Երեք թռչնակ՝ սոված վաղուց,
Երեք ձագուկ դեղնակտուց
Ինձ են մնում
Դատարկ բնում,
Որ քեզ գտնեմ
Ու տուն տանեմ։
Այնքան եմ ես ծովեր անցել,
Որ մարմինս է կապույտ դարձել,
Այնքան անցել երկրե-երկիր,
Որ ճանկերս են դարձել կարմիր,
Այնքան թռել երկնքով խոր,



Որ իմ վզին մինչև այսօր
Վառ գույներով քանի՜, քանի՜
Հետքն է մնում ծիածանի։
Գտա ես քեզ, և դու արդեն
Ձագերիս կե՛ր դարձիր, ցորեն»։
Հատիկը դողաց,
Ասաց վախեցած.
«Ես քո երեք ձագի համար
Ինչպե՞ս դառնամ երեք մաս, մա՛յր։
Եթե միայն մեկն ինձ ուտի,
Մյուս երկուսը մնան պիտի,
Իսկ թե հիմա ինձ խնայես
Եվ այս խոնավ հողում պահես,
Ես ծիլ կտամ, ու շատ չանցած

Կկշտանա տունդ քաղցած»:
Մայրը չէր ուզում կովեն ձագերը,
Չէր ուզում կորցնել և գտած կերը:
Բայց թմբի վրա
Մի փոս փորեց նա,
Հատիկը գցեց
Ու հողով ծածկեց:

2

Դեռ չէր բարձրացել արևը սարից,
Երբ թմբին իջավ աղավնին նորից:
Տեսավ... Ի՜նչ տեսնի.
Հատիկի տեղում
Ծիլն է ցորենի
Քամուց դողդողում:
«Զորանում եմ ես: Ո՞վ ջուր կբերի...
Թռի՛ր, աղավնի, պատմիր ամպերին:
Անձրևից վարար
Թող ծարավս անցնի,
Ձագերիդ համար
Կերն առատ լինի»:
Աղավնին արագ
Երկինք սլացավ,
Աղավնին ճերմակ
Ամպերին հասավ:
Ամպերին հասավ հոգնած աղավնին,
Զարմացած ամպերն այսպես ասացին.
«Ներքևում թողած հողը բերքառատ,
Օդը բուրավետ, բույնդ հարազատ՝
Ինչու՞ ես եկել հոգնած ու սառած.
Այստեղ չի ապրում ոչ մի արարած:
Գնա՛, կսառչես,
Քաղցից կկորչես»:
Խե՜ղճ մայր աղավնի. ինչպե՞ս է մրսում,
Աղավնու լեզվով նրանց աղերսում.
«Երեք թռչնակ՝ սոված վաղուց,
Երեք ձագուկ դեղնակտուց
Սպասում են տանը հույսով:
Անձրև՛ տվեք, որ հողում զով
Ծիլը աճի,
Ջուր չկորչի»:
Այս որ լսեցին,
Ամպերն ասացին.
«Սիրով կօգնենք աշխատողին,
Անձրև կտանք մենք մայր հողին»:
Տեղաց կենարար
Անձրևը վարար,
Եվ ծիլը ծարավ
Խմեց, ուժ առավ:

3

Դեռ չէր բարձրացել արևը սարից,
Երբ թմբին իջավ աղավնին նորից:
Տեսավ... Ի՜նչ տեսնի.
Ծիլը ցորենի
Տկել է ցողուն
Ու ո՜նց է դողում.
«Սառել եմ ցրտից ես բոլորովին,
Թռի՛ր, աղավնի, պատմիր արևին:
Շողերով իր վառ
Թող ինձ տաքացնի,
Ձագերիդ համար
Կերն առատ լինի»:
Աղավնին լսեց ու տվեց թևին,
Երկինք սլացավ, հասավ արևին:
Արևը ներկեց նրան իր ոսկով,
Արևը նրան ասաց զարմանքով.
«Ներքևում թողած հողը բերքառատ,
Օդը բուրավետ, բույնդ հարազատ՝
Ինչու՞ ես եկել հոգնած ու սառած.
Այստեղ չի ապրում ոչ մի արարած:
Գնա՛, կվառվես,
Քաղցից կմեռնես»:
Խեղճ մայր աղավնի. տանջվում է տոթից,
Բայց չի հեռանում արևի մոտից.
«Երեք թռչնակ՝ սոված վաղուց,
Երեք ձագուկ դեղնակտուց
Սպասում են տանը հույսով:
Տու՜ր ջերմություն, որ հողում զով
Ցորենն աճի,
Ջուր չկորչի»:
Արևը խղճաց,
Աղավնուն ասաց.
«Սիրով կօգնեմ աշխատողին,
Ես ջերմություն կտամ հողին»:
Երկնքի սրտից
Արևն է շողում,
Ցողունը ցրտից
Էլ չի դողդողում:

4

Դեռ չէր բարձրացել արևը սարից,
Երբ թմբին իջավ աղավնին նորից:
Ցողունի տեղում
Ոսկե բեղերով
Հասկն էր ծիծաղում
Մեղմ օրորվելով.
«Աղավնի, դե տա՛ր հասկը ցորենի,
Ձագերիդ կերը թող առատ լինի»:
Աղավնին թռավ,
Հասկը բույն տարավ,
Ձագերը կերան
Երգով խնդաձայն.
«Փառք տանք ամպերին,
Որ անձրև բերին,
Արևին, հողին,
Մեզ կյանք տվողին»:

Թարգմ. Պ. Միքայելյան



**Բաժինը վարում է պրոֆեսոր Պիցունցյանը**

*«Սիրելի պրոֆեսոր, ես շատ եմ սիրում տնային ծաղիկներ աճեցնել, բայց չգիտեմ, թե ինչ պետք է անել, որ նրանք երկար ապրեն։ Խնդրում եմ պատասխանեք։*

ԱՆԱՀԻՏ ՍԱՐԳՍՅԱՆ
Երևանի Չայկովսկու անվան երաժշտական դպրոցի 5-րդ դասարանի աշակերտուհի»:

Անահիտի նամակը ես հանձնեցի կենսաբանական գիտությունների թեկնածու Լ. Փալանջյանին։ Ահա նրա պատասխանը.

«Սիրելի Անահիտ, տնային բույսերի երկարակեցությունը շատ բանով կախված է ճիշտ և ժամանակին ջրելուց: Հանախակի ջրելուց (հատկապես ձմռանը) բույսի արմատները կարող են փտել, իսկ ուշ-ուշ ջրելուց՝ չորանալ: Թե երբ պետք է ջրել, դա կախված է տարվա եղանակից, օդի ջերմաստիճանից ու խոնավությունից, ծաղկամանի մեծությունից և, վերջապես, բույսից: Ծաղկամանի հողը երբեք չոր չպետք է լինի: Ամառը կարելի է ջրել ամեն օր, իսկ ձմռանը՝ երկու օրը մեկ անգամ:

Ջրել պետք է սենյակի 20—25° ջրով, քանի որ սառը ջուրը ավելի ուշ է թափանցում արմատները: Ամռանը պետք է ջրել երեկոյան, իսկ ձմռանը՝ առավոտյան ժամերին: Արև ժամանակ բույսերը չի կարելի ջրել:

Կարևոր է նաև բույսի տեղափոխումը, որը կատարվում է վաղ գարնանը: Ծաղկամանից պետք է հանել հողագունդը՝ բույսի հետ, և դիտել: Եթե այն պատած է արմատների խիտ ցանցով, ուրեմն անհրաժեշտ է տեղավորել ավելի մեծ ծաղկամանում: Փայտի ծայրով պետք է հեռացնել հողագնդի մի մասը, քանդել մանր արմատների կծիկը և անջատել մեռած արմատների մազանման ցանցը:

Նոր ծաղկամանում բույսը պետք է տեղավորել այնպես, որ նրա արմատավիզը ծաղկամանի եզրից 1—1,5 սմ ցածր լինի: Հողը լցնելիս ծաղկամանը մի քանի անգամ կամաց խփիր սեղանին, որպեսզի արմատները լավ ընդգրկվեն հողով: Ապա ջրիր և բույսը մի քանի օր պահիր ստվերի մեջ:

Սիրելի Անահիտ, հետևիր, որ ծաղիկները չվարակվեն միջատներով: Վնասակար միջատներ նկատելու դեպքում բույսը պետք է փոշոտել «ԴԴՏ»-ով: Կարելի է նաև վերցնել մի բաժակ ջուր, նրա մեջ եռացնել թեյի մեկ գդալ մախորկա և այդ լուծույթով սրսկել բույսը: Հաջորդ օրը բույսը պետք է լվանալ մաքուր ջրով:

Այս խորհուրդներին հետևելու դեպքում, քո ծաղիկները կանեն փարթամորեն և կապրեն երկար:

## ԱՐՇԱՎԻ ԺԱՄԱՆԱԿ

Սիրելի երեխաներ, քանի որ ձեզնից շատերը այժմ գտնվում են ճամբարներում, ես ձեզ մի քանի խորհուրդ եմ ուզում տալ:

Դուք, հավանաբար արշավներ կկազմակերպեք, և որպեսզի դրանք հաջող անցնեն, լավ կլինի, որ հետևեք իմ խորհուրդներին։

Արշավի ժամանակ մարդու տաքացած օրգանիզմը սառչում է քրտինք արտադրելով: Օրգանիզմում եղած խոնավությունը քրտինքի վերածվելիս սիրտը շատ լարված է աշխատում: Դրա հետ մեկտեղ, օրգանիզմը պահանջում է լրացնել կորցրած խոնավության պակասը, և մարդ սաստիկ ծարավ է զգում: Ծարավի հագեցումը անմիջապես ստիպում է սրտին աշխատել լրացուցիչ բեռնվածությամբ: Այսպիսով արշավի ժամանակ ջուր խմելը հոգնեցնում է սիրտը:

Բայց երբ մարդ աղ է ընդունել, ապա այդ աղը պահպանում է օրգանիզմի խոնավությունը, ջրի պահանջ ավելի քիչ է զգացվում, և դրանով հեշտանում է սրտի աշխատանքը:

Արշավի ժամանակ քթով շնչելը նույնպես օգնում է, որ մարդ ուշ ծարավի:

Հիշեք նաև, որ երբ ճանապարհին թրջվել եք, ապա անմիջապես պետք է չորացնել շորերը: Արշավի գնալիս նոր կոշիկներ մի հագեք, և լավ կլինի, որ գուլպաները նոր լինեն՝ առանց կարկատանների, որպեսզի ոտքերը չհարվեն:

Երբ արշավից հոգնած կվերադառնաք, նախ մի փոքր հանգստացեք, ապա լվացվեք և նոր միայն պառկեք քնելու. առավոտյան դուք կարթնանաք առույգ ու կայտառ:






# ԹԱՆԿԱԳԻՆ ՆՎԵՐ

Հաճելի է նվեր ստանալը: Հաճելի է նաև նվեր տալը: Բայց կարևոր է իմանալ, թե ինչ նվիրել և ինչպես:

Գագիկը հրավիրված էր իր ընկերուհու ծննդյան տոնին: Նա գրապահարանից վերցրեց Թումանյանի հեքիաթների ժողովածուն և դիմեց հորը.

— Հայրիկ, այս գիրքն ուզում եմ նվիրել Անահիտին: Կարելի՞ է:

— Գիրքը քոնն է, եթե ուզում ես, նվիրիր:

— Ճիշտ է, մի քիչ ափսոսում եմ, բայց Անահիտը լավ աղջիկ է և այնքա՜ն է սիրում Թումանյանին:

— Դե, ուրեմն՝ տուր:

Յուրաքանչյուր նվեր իր պատմությունն ունի, և պետք է աշխատել, որ այդ պատմությունը գաղտնի մնա: Թե չէ, ինչի՞ նման կլինի, որ տղան մարտի 8-ի առթիվ իր մայրիկին ծաղկեփունջ նվիրելիս ասի.

— Վերցրո՛ւ, մայրիկ: Ամբողջ քաղաքը ման եմ եկել այս անիծյալ ծաղիկների համար: Հազիվ եմ գտել: Այնքան էլ թանկ են՝ տասը ռուբլի վաթսուն կոպեկ:

Պատահում է նաև, որ նվերը տալու պատմությունը կապվում է տհաճ ու անցանկալի երևույթների հետ:

Իրենց ուսուցչուհու ծննդյան օրվա առթիվ վեցերորդ դասարանցիները նվեր էին պատրաստում: Դասարանի ավագ Համիկը ցուցակ էր կազմել և երեխաներից դրամ էր հավաքում: Գոհարը հինգ ռուբլի էր բերել, Գուրգենը՝ տասը, իսկ Հակոբը՝ մի ամբողջ հիսունանոց:

Այդ ժամանակ Մարիամը քաշվել էր դասարանի մի անկյունն ու գլուխը կախ՝ ձայն չէր հանում:

— Իսկ դու, Մարիամ, ինչո՞ւ փող չես տալիս, — բարկացած նրան դիմեց Համիկը: — Մոռացել ես, հա՞: Սիրելի ուսուցչուհու ծննդյան օրն է, իսկ դու...

— Ես չեմ մոռացել, այլ փող չունեմ, — արցունքների միջից հազիվ արտասանեց Մարիամը, — իսկ ընկեր Վարդերեսյանին ես գուցե ձեզնից էլ շատ եմ սիրում, — և նա դուրս վազեց դասարանից:

Հաջորդ օրը ուսուցչուհու սեղանին դրված էր արևի ճառագայթների տակ փայլփլող ճենապակե մի գեղեցիկ սափոր: Երբ ընկեր Վարդերեսյանը մտնելով դասարան, տեսավ սափորը, նրա սիրտը մի պահ լցվեց ջերմությամբ: Հաճելի էր, որ աշակերտները հիշել էին իր ծննդյան օրը: Բայց դիտելով թանկարժեք իրը, նրա դեմքը սկսեց մռայլվել: Նա պատկերացրեց այդ նվերի պատմությունը. իհարկե, երեխաները փող են հավաքել, և բոլոր ծնողները չէ, որ կարողացել են փող տալ: Այդ միջոցին ուսուցչուհու հայացքն ընկավ հետևի նստարանին կուչ եկած Մարիամի վրա: Նա հիշեց, որ Մարիամը երեք փոքր եղբայր ունի, իսկ աշխատողը միայն մայրն է:

Եվ ուսուցչուհու տրամադրությունն ընկավ:

Ձեր դպրոցներում էլ, երեխաներ, երևի այսպիսի դեպքեր պատահում են: Իհարկե, ուսուցչուհուն կարելի է նվեր տալ: Բայց ինչու՞ դրամով գնել, չէ՞ որ դուք ինքներդ դրամ չեք վաստակում, և դուրս է գալիս, որ նվիրում եք ոչ թե դուք, այլ ձեր ծնողները:

Նվերը պարտադիր չէ խանութում գնել: Ինքներդ կարող եք որևէ բան պատրաստել ու նվիրել՝ ասեղնագործած անձեռոցիկ կամ թաշկինակ, տուփ, նկար և այլն: Կարող է այդ նվերներն այնքան էլ գեղեցիկ չլինեն, բայց գլխավորն այն է, որ դուք սիրով եք աշխատել դրանց պատրաստման վրա: Նվերը հենց դրանով է թանկ:

## ՀԻՇԻՐ

1. Ընկերոջը կարելի է նվիրել սեփական իրերից մի որևէ բան՝ գիրք, ներկեր, ալբոմ: Զպետք է ափսոսալ, երբ նվեր ես տալիս:

2. Մի՛ աշխատիր, որ նվերը շատ թանկ լինի: Նվերի արժեքը դրանում չէ:

3. Քեզ նվիրած իրը ուրիշին մի՛ նվիրիր, դրանով դու կվիրավորես նվիրողին:

4. Երբ նվեր ես ստանում, մի կողմ մի՛ դիր: Անմիջապես բաց արա, նայիր: Եթե նվերը քեզ առանձնապես դուր չի գալիս, այդ բանը մի՛ ցույց տա, դրանով դու կվիրավորես հյուրիդ:

5. Որևէ մեկին նվեր պատրաստելիս աշխատիր իմանալ, թե նա ինչ է սիրում: Նվերիդ մասին ոչ ոք նախօրոք չպետք է իմանա: Հաճելի է, երբ նվերը անսպասելի է լինում:

6. Եթե քեզ որևէ համեղ բան են նվիրել, հյուրասիրիր ներկաներին:

7. Նվեր տալուց հետո ընկերոջդ մի՛ հիշեցնի թե՝ «Սա ես եմ քեզ նվիրել: Սա իմ գիրքն է»:

8. Երբեք մի՛ քննադատիր ուրիշների նվերները և մի՛ գովաբանիր քո տարած նվերը:

9. Եթե դու ծննդյան տոնի ես հրավիրված և նվիրելու ոչինչ չունես, գնա առանց նվերի: Դրանում ոչ մի վատ բան չկա: Իսկ եթե չգնաս, ընկերդ կկարծի, թե մոռացել ես, և կնեղանա:



## Խաղեր

### 12 ՓԱՅՏԻԿ

Այս խաղի համար պետք է ընտրել այնպիսի վայր, որտեղ թաքնըվելու տեղեր լինեն:

Սկզբում ընտրում են խաղավարին: Հետո վերցնում են մի քար և նրա վրա դնում տախտակ, որի ծայրին տեղավորված են 12 փայտիկներ (ինչպես նկարում է): Ապա խաղացողներից մեկը ոտքով հարվածում է տախտակի ծայրին, փայտիկները թռչում են (եթե խաղավարը կարողանում է օդի մեջ բռնել փայտիկներից մեկը, ապա հարվածողն է դառնում խաղավար), իսկ խաղացողները շտապում են թաքնվել: Խաղավարը հավաքում է փայտիկները և դարսում տախտակի վրա: Ապա նա սկսում է փնտրել թաքնվածներին՝ աշխատելով շատ չհեռանալ:



Երբ խաղավարը նկատում է որևէ մեկին, վազում է տախտակի մոտ, ձեռքը կպցնում նրան և բարձրաձայն կանչում նկատվածի անունը, որը խաղից դուրս է գալիս: Խաղավարն այսպես շարունակում է, մինչև բոլորին գտնելը: Բայց եթե այդ ժամանակ խաղացողներից մեկը կարողանա գաղտագողի մոտենալ տախտակին (մինչև խաղավարի վրա հասնելը) և հարվածով ցրել փայտիկները, ապա բոլորը կրկին թաքնըվում են, իսկ խաղավարը նորից հավաքում է փայտիկները և սկսում որոնել խաղացողներին: Խաղն ավարտվում է այն ժամանակ, երբ խաղավարը կարողանում է բոլորին գտնել: Նոր խաղավար է դառնում նա, ով առաջինն է բռնվել:

### ՀԱՄԱՐՆԵՐԻ ՓՈԽՈՒՄ

Խաղացողները շրջան են կազմում ուս-ուսի տված և ըստ կարգի հաշվում: Յուրաքանչյուրը հիշում է իր համարը: Շրջանի կենտրոնում կանգնում է խաղավարը, որն առանց համարի է: Նա բարձրաձայն կանչում է ցանկացած երկու համար: Հայտարարված համարները պետք է արագ վազքով փոխանակեն իրենց տեղերը: Եթե խաղավարը կարողանում է գրավել նրանցից մեկի ազատված և դեռևս չգրավված տեղը, ապա նոր խաղավար է դառնում նա, ով դուրս է մնում: Նրա համարը վերցնում է հին խաղավարը:

Խաղն ավելի աշխույժ դարձնելու համար կարելի է միանգամից կանչել երեք-չորս համար:

# Մեր օրացույցը

## ՆԱՐ-ԴՈՍ

Միքայելը ուսումնածարավ պատանի էր: Բայց նրա ծնողները չգիտեին, թե ինչ է ուսումը: Ծխական դպրոցում նա առաջին գրագիտությունը սովորեց և էլ դրանից հետո չտեսավ հայոց դպրոցի երեսը:

Ռուսական երկդասյան դպրոց, Խոնիի գիմնազիա, Թիֆլիսի արհեստագիտական դպրոց: Նա վերջին երկուսում շատ կարճ է մնացել՝ մեկ կամ երկու տարի: Դե ինչպե՞ս կարող էր հրապուրել նրան, այդ ամենը, երբ նրա ուշքն ու միտքը ուրիշ բա-



նով էր զբաղված: Նրան ձգում էր գրականությունը: Հենց սիրած գործին նվիրվելու ձգտումը նրան տանում է «Նոր դար» թերթը: 22 տարի շարունակ Միքայելը՝ ապագա հռչակված գրող Նար-Դոսը աշխատեց միայն այդ թերթում, նա աշխատել է նաև «Մուրհանդակ» և այլ պարբերականներում: Նա ազատ ժամանակ համարյա թե չէր ունենում: Աշխատում էր առավոտից մինչև ուշ գիշեր: Ի՞նչ աներ: Չէ որ նա ուզում էր գրել, ստեղծագործել: Նա շատ բան ուներ ասելու, և հենց դա էր պատճառը, որ ստեղծագործելու ժամանակ էր գտնում գիշերը:

Նար-Դոսը վաղ է սկսել գրել. առաջին տպագրված ստեղծագործությունը «Ճշմարիտ բարեկամը» գործն էր (1886 թ.): Բայց նրան մեծ հռչակ բերեցին «Աննա Սարոյան», «Սպանված աղավնին», «Պայքար», «Մահը» վիպակներն ու վեպերը, «Մեր թաղը» պատմվածաշարը և մյուս գործերը:

Նար-Դոսը Շիրվանզադեի հետ միասին քննադատական ռեալիզմի խոշոր ներկայացուցիչն է հայ նոր գրականության մեջ: Նա իր ստեղծագործությունների նյութը վերցնում էր իրական կյանքից, նկարագրում էր բուրժուական միջավայրում ապրող մանր մարդկանց, նրանց հույզերն ու ապրումները: Նար-Դոսը սիրում էր պատկերել իր հերոսների խորը հոգեբանությունը: Նրա հերոսները հասարակ մարդիկ են. ո՞վ չի հիշում զինագործ Ասատուրին, որը հայտնի է «Հոպոպ» մականունով, նախշքար Դավթին, հյուսն Սաքուլին, գրոգապան Յագորին, նրա մորը՝ գիժ Հոռոմսիմին, խեղճ ու կրակ պառավ Մարանին, նրա գող ու ավազակ որդուն՝ Արտեմին կամ գրբաց Գրիգորին ու նրա թշվառ զոհին՝ Մարթային:

Նար-Դոսը նկարագրել է անցյալի հայ կնոջ վիճակը, ինչպես նաև հայ մտավորականների կյանքը: Նա ցույց է տվել, թե որքան անապահով էին հայ ուսուցիչները, գրողները, խմբագիրներն անցյալում, որոնք ապրում էին թշվառության ճիրաններում:

Նար-Դոսը տեսավ հայ մտավորականի, գրողի ազատագրումը կապիտալիստական անարգ իրականությունից: Նա շրջապատվեց հոգատարությամբ ու հարգանքով, տոնվեց նրա գրական գործունեության 45-ամյակը:

Նար-Դոսը մեռավ Թիֆլիսում, 1933 թվականին:

Քանի անցնում են ժամանակները, այնքան շատ ու նոր ընթերցողներ է գտնում վիպասանը, այնքան սիրելի է դառնում նրա ստեղծագործությունը:



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝ նկ. Ալ. Գրիգորյանի

**Այս համարի հետ տրվում է ձրի հավելված հոկտեմբերիկների համար**


Խմբագիր՝ ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝** ԱՍԱՏՐՅԱՆ Օ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ ԱԼ. (գեղարվեստական խմբագիր), ԵՍԱՅԱՆ Վ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀՐԱՁՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Պ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍԱՖՅԱՆ Պ., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՕԶԱՆՅԱՆ Ա.:

„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир Банаки, № 41.
Հասցեն՝ Երևան, Կարմիր Բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06:

ՎՖ 05245. Պատվեր 687. Տպաքանակ 6000: Տպագրական 4,5 մամուլ: Ստորագրված է տպագրության 30/VI 1958 թ. ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆկոմբինատ, Երևան, Տերյան 91:
Գինը 2 ռ.



## ՈՒՄ ԱԶԳԱՆՈՒՆՆ Է

Հարցերին ճիշտ պատասխանելու դեպքում դուք նշված վանդակներում (վերից վար) կկարդաք հայ մեծ գրողի ազգանունը:

1. Ո՞վ է «Ձմեռվա իրիկունը» բանաստեղծության հեղինակը, 2. Թումանյանի որ պատմվածքն է պիեսի վերածվել, 3. Ինչպե՞ս է «Խաղաղության աղավնին» բանաստեղծության հեղինակի ազգանունը, 4. Վ. Հյուգոյի որ մանուկ հերոսն է կռվել բարիկադների վրա, 5. Ո՞վ է նկարել «Պիոներում» տպագրված «Կիկոսի մահը» նկարը, 6. Ո՞վ է Փոքր Մհերի մայրը, 7. Ինչպե՞ս է «Հող» վեպի հեղինակի ազգանունը, 8. Ո՞վ է գրել «Տորք Անգեղը», 9. Ինչպե՞ս է «Պեպոյի» հեղինակի ազգանունը, 10. Դանիական ո՞ր մեծ գրողի հեքիաթներն եք դուք հաճախ կարդում:

## Ո՞Վ ՇԱՏ ԿԳՐԻ

| | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| | Ա | | Ա | | Ա | |
| | Ա | | Ա | | Ա | |
| | Ա | | Ա | | Ա | |
| | Ա | | Ա | | Ա | |
| | Ա | | Ա | | Ա | |
| | Ա | | Ա | | Ա | |
| | Ա | | Ա | | Ա | |

Լրացրեք բաց թողած վանդակները այնպես, որ հորիզոնական շարքերում ստացվեն հասարակ գոյական անուններ: Ավարտելուց հետո փորձեք շարունակել նոր բառերի որոնումը: Ո՞վ շատ կգրի յոթ տառից բաղկացած հասարակ գոյականներ, որոնց մեջ լինի երեք «ա» տառ, ինչպես ցույց է տրված գծագրում:

*Առաջարկ՝ Գ. ԳԱՍՊԱՐՅԱՆԻ*



## ԿԱՏԱԿ-ԽՆԴԻՐՆԵՐ

1. Սենյակում 7 մոմ է վառվում: Եթե երկուսը հանգցնենք, քանի՞սը կմնան:

2. Մեկ ու կես ձուկը արժե 1 ռ. 50 կ.: Ի՞նչ արժե 13 ձուկը:

3. Կարո՞ղ եք 5 հատ 1-ով գրել 100:

4. Թռչում էր սագերի երամը: Մի սագը՝ առջևից, երկուսը՝ հետևից: Մեկը՝ հետևից, երկուսը՝ առջևից: Մեկը՝ երկուսի մեջտեղում: Եվ երեքը՝ մի շարքով: Քանի՞ սագ էր թռչում:

1
2
3
4
5
6
7
8
9
10

*Առաջարկ՝ դպրոցական*
*Յ. ԱՐԱԲԱՋՅԱՆԻ*
*(Գյուղ Բազարքենդ, Ադրբ. ՍՍՌ)*

## Պատասխանում ենք

«Պիոներ» № 6

ՉԱՅՆՎՈՐԴ *1. Կարամզին, 2. «Նունե», 3. Եկմալյան, 4. Նեկրասով, 5. Վոյնիչ, 6. Չայկովսկի, 7. Իվանով, 8. Վաչագան, 9. Ներիս, 10. Սամվել, 11. Լեիտան, 12. Ներուդա, 13. Աղասի, 14. Իսահակյան, 15. Նար-Դոս, 16. «Սմենա», 17. «Արսեն», 18. «Նամուս», 19. Սերով, 20. վեպ, 21. Պուշկին, 22. Նազար:*

ՔԱՆԻ՞ ԽՈՐԱՆԱՐԴ ԿԱ — *ա) մեկ, բ) վեց, գ) տասներկու, դ) ութ:*

ՔՈՒՅՐԵՐ ԵՎ ԵՂԲԱՅՐՆԵՐ — *4 եղբայր և 3 քույր:*

ԱՐԵՎՆ ՈՒ ԼԱՊՏԵՐԸ — *Արևի ճառագայթներով լուսավորվելու ժամանակ սյուների ստվերները զուգահեռ են (ձախ կողմի նկարը): Լապտերի լույսից ստվերները կշեղվեն իրարից:*

ՀԱՎԱՍԱՐ ՄԱՍԵՐԻ



25 ՔԱՌԱԿՈՒՍԻ



ԾԱՂԻԿՆԵՐ — *Վարդ, տերեփուկ, լալա, մարգարտածաղիկ, կակաչ, մանուշակ, շուշան, յասաման, նունուֆար, զանգակ, հասմիկ, մեխակ, ձնծաղիկ:*

Նկ. Ս. ՍՏԵՓԱՆՅԱՆԻ



## ԱՐԲԱՆՅԱԿԸ

Ս. ՄԿՐՏՉՅԱՆ

Տղաները ուրախ են շատ,
Նրանց նավն է թեթև լողում։
Միայն Հայկի վիճակն է վատ.
Սիրտն է նրա ահից դողում։

— Վա՜յ, մայրիկ ջան,—ճչաց Հայկը,—
Տեսե՛ք, գալիս է լուսնյակը,
Որ մեր նավը տակովն անի,
Ա՜խ, ո՞ւր փախչեմ բա ես հիմի...

— Ոչ, ոչ, հանգիստ կացեք, տղերք,
Դեռ չենք հասել աստղերին մենք։
Վախկոտ, ոչ թե դա լուսնյակն է,
Այլ մեր երկրի արբանյակն է։